Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 5 ՓԵՏՐՎԱՐ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ (ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ) ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
# ԴԻՄՈՒՄԸ

## ԲՈԼՈՐ ԸՆՏՐՈՂՆԵՐԻՆ,

*Բանվորներին, բանվորուհիներին, գյուղացիներին ու գեղջկուհիներին, սովետական ինտելիգենցիային, Սովետական Բանակի ռազմիկներին.*

Ընկերներ.

1947 թվականի փետրվարի 9-ին մեր Ռեսպուբլիկայի քաղաքացիները ընտրելու են Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի դեպուտատներ։

Բոլշևիկների պարտիան ինչպես անցյալ ընտրություններին, նույնպես և այժմ գալի ընտրություններն է գնում անպարտիական բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի հետ բլոկ կազմած, անխախտ դաշինք կնքած։

Պարտիան ընտրություններին մասնակցում է պրոֆեսիոնալ միությունների, Կոմերիտմիության և աշխատավորների հասարակական մյուս կազմակերպությունների հետ միասին։ Հետևապես, Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուներն ընդհանուր են, ինչպես կոմունիստների, այնպես էլ անպարտիականների համար։

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեն կոչ է անում բոլոր

կոմունիստների և անպարտիականների՝ իրենց ձայնը տալ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության ինչպես պարտիական, այնպես և անպարտիական թեկնածուներին։ Կենտրոնական Կոմիտեն համոզված է, որ բոլոր ընտրողները միահամուռ կերպով կքվեարկեն հօգուտ կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուների։

Ինչո՞ւ Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեն համոզված է, որ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի առաջիկա ընտրություններին ընտրողները նորից իրենց վստահությունը կհայտնեն բոլշևիկյան պարտիային, հավանություն կտան նրա քաղաքականությանը և միահամուռ կերպով կըպաշտպանեն կոմունիստների ու անպարտիականների բլոկի թեկնածուներին։

Ընտրողները վստահություն կհայտնեն և միահամուռ ձայն կտան կոմունիստների ու անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուներին, որովհետև սովետական մարդիկ իրենց բազմամյա փորձով համոզվել են, որ Լենին-Ստալինի պարտիայի քաղաքականությունը լրիվին համապատասխանում է ժողովրդի արմատական շահերին, որ բոլշևիկների պարտիայի ամբողջ գործունեությունը անձնուրաց ծառայություն է ժողովրդին։ Լենին-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ մեր երկրի ժողովուրդները տապալեցին կապիտալիստների ու կալվածատերերի լուծը և հաստատեցին սովետական իշխանություն, Լենին-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ նրանք երիտասարդ Սովետական Իշխանությունը պաշտպանեցին ինտերվենտներից, սպիտակգվարդիականներից և մեր Հայրենիքի մյուս թշնամիներից։

Սովետական Իշխանության գոյության տարիներին մեր երկրի տեսքն արմատապես փոխվեց։ Կոմու-



նիստական պարտիայի քաղաքականության անշեղ կենսագործման շնորհիվ Սովետական Միությունը դարձավ առաջավոր, կուլտուրական, հզոր սոցիալիստական տերություն։ Ստալինյան հնգամյակների ընթացքում ըստեղծվեց սոցիալիստական արդյունաբերություն և բարձրր զարգացած գյուղատնտեսություն, որոնք դարձան մեր Հայրենիքի տնտեսական ու ռազմական հզորության հիմքը։ Ծաղկեց և բարգավաճեց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, սովետական առաջավոր գիտությունը, արվեստն ու գրականությունը։

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված Հայրենական մեծ պատերազմում Լենին-Ստալինի պարտիան ոգեշնչում ու կազմակերպում էր սովետական ժողովրդին, մոբիլիզացնում երկրի բոլոր ռեսուրսները հանուն հաղթանակի, և սովետական մարդիկ կրկին համոզվեցին, թե որքան ճիշտ ու հեռատես էր մեր պարտիայի քաղաքականությունը երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման, սովետական պետության ռազմա-տնտեսական հզորությունն ամրապնդելու գործում։ Հայրենական մեծ պատերազմի տարիներին ամբողջ ուժով երևան եկավ սովետական բազմազգ ժողովրդի բարոյական-քաղաքական միասնությունը։ Մեր երկրի բանվոր դասակարգը, կոլխոզային գյուղացիությունը, ինտելիգենցիան, սովետական եղբայրական բոլոր ժողովուրդները համախմբվելով բոլշևիկյան պարտիայի շուրջը, մեր մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի շուրջը, կանգ չառնելով ոչ մի զոհողության ու դժվարության առաջ, անձնվիրաբար պայքարեցին ռազմաճակատում և թիկունքում հանուն մեր սիրելի Հայրենիքի պաշտպանության, տարան մեծագույն պատմական հաղթանակ գերմանական զավթիչների ու ճապոնական իմպերիալիստների դեմ, փրկելով մեր Հայրենիքը և ամբողջ առաջավոր մարդկությունը ստրկացման սպառնալիքից։

Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ տարած այդ պատմական հաղթանակի շնորհիվ ամրապնդվեց մեր մեծ Հայրենիքի սահմանների անվտանգությունը, ապահովվեց մեր երկրի ժողովուրդների ազգային ինքնուրույնությունը, ազատությունն ու անկախությունը։ Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած փայլուն հաղթանակը Լենինի-Ստալինի պարտիայի քաղաքականության տրիումֆն է։

Ով ուզում է, որ մեր Սովետական Հայրենիքը առաջիկայում ևս լինի ուժեղ ու հզոր, նա ձայն կտա կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուներին։

«Կոմունիստների և անպարտիականների հզոր բլոկը բնական ու կենսական գործ է, որովհետև մեզ մոտ, սոցիալիստական երկրում պարտիականները և անպարտիականները, «ապրելով ընդհանուր կոլեկտիվում, միասին են պայքարել մեր երկրի հզորության ամրապնդման համար, միասին են պատերազմել և արյուն թափել ռազմաճակատներում՝ հանուն մեր Հայրենիքի ազատության ու վեհության, միասին են կռել ու կոփել հաղթանակը մեր երկրի թշնամիների դեմ։ Նրանց միջև տարբերությունը միայն այն է, որ առաջինները գտնըվում են պարտիայի շարքերում, իսկ մյուսները՝ ոչ։ Բայց այդ ձևական տարբերություն է։ Կարևորն այն է, որ թե սրանք, և թե նրանք կերտում են միևնույն ընդհանուր գործը»։ (Ի. Ստալին):

Ահա թե ինչու Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեն կոչ է անում բոլոր ընտրողներին՝ միահամուռ ձայն տալ կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուներին։

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի ղեկավարությամբ հայ ժողովուրդը դեպի Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի ընտրություններն է գնում՝ սերտորեն համախմբված սովետական կառավարության, բոլշևիկների փառապանծ պարտիայի և ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը։



Ամբողջ Ռեսպուբլիկայում հայրենասիրական մեծագույն խանդավառությամբ անցան աշխատավորների նախընտրական ժողովները։ Բանվորների և ծառայողների ընդհանուր ժողովները՝ գործարաններում, ֆաբրիկաններում և հիմնարկներում, կոլխոզնիկների ժողովները, զորամասերի ժողովները Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուներ առաջադրեցին կոմունիստների և անպարտիականների բլոկի լավագույն և արժանավոր մարդկանց։

Ամբողջ հայ ժողովուրդը միահամուռ կերպով Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի դեպուտատության առաջին համաժողովրդական թեկնածու առաջադրեց մեր բոլոր հաղթանակների կազմակերպիչ և ոգեշնչող, սովետական ժողովրդի մեծ առաջնորդ և ուսուցիչ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին։

Ընկեր Ստալինի անվան հետ են կապված մեր երկրի հզոր սոցիալիստական ինդուստրիայի ստեղծումն ու զարգացումը, կոլխոզային կարգերի հաղթանակը, սովետական գիտության և արվեստի բուռն ծաղկումը, ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը, աշխարհում ամենադեմոկրատական Կոնստիտուցիայի ստեղծումը։ Ընկեր Ստալինի անվան հետ են կապված հայ ժողովրդի ազատագրությունը և վերածնունդը, նրա պետականության վերածնունդը, հայ ժողովրդի կյանքում նշանավոր իրադարձությունը՝ աշխարհով մեկ սփռված հայության վերադարձը հայրենիք՝ Սովետական Հայաստան։

Հայ ժողովուրդը անսահման երջանիկ է ու հպարտ,

որ Ռեսպուբլիկայի իշխանության Գերագույն օրգանի դեպուտատության թեկնածուների կազմումն են մեծ առաջնորդ ընկեր Ստալինը և նրա մերձավոր զինակիցներ, բոլշևիկյան պարտիայի ու սովետական պետության ականավոր գործիչներ Վյաչեսլավ Միխայլովիչ Մոլոտովը և Անաստաս Իվանովիչ Միկոյանը։

Ձայն տալով կոմունիստների և անպարտականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին, Սովետական Հայաստանի աշխատավորները ձայն կտան այն բոլոր հոյակապ նվաճումների ամրապնդման ու հետագա զարգացման օգտին, որ ձեռք է բերվել Սովետական Հայաստանում, նրա գոյության 26 տարիների ընթացքում։

Ի՞նչ էր ներկայացնում Հայաստանը 26 տարի առաջ։ Դա ցարական Ռուսաստանի մի կիսագաղութ էր, նրա հետամնաց ծայրամասերից մեկը, որ հատկապես հայ ժողովրդի ամենաոխերիմ թշնամիների՝ դաշնակների տիրապետության տարիներին կանգնեց կործանման եզրին, դառնալով «որբերի երկիր, արցունքի երկիր, աղքատության և վայրենի կամայականության երկիր» (Ա. Միկոյան)։Միայն Սովետական իշխանությունը խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն բերեց հայ ժողովրդին։

Սովետական Իշխանությունը Հայաստանում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծնունդն է։ Սովետական իշխանության գոյության 26 տարվա ընթացքում Հայաստանը դարձավ Սովետական Միության առաջավոր ռեսպուբլիկաներից մեկը՝ զարգացած ինդուստրիայով, սոցիալիստական գյուղատնտեսությամբ և առաջավոր կուլտուրայով։ Իրագործվում է Վ. Ի. Լենինի պատմական ցուցումը՝ Ռեսպուբլիկան էլեկտրիֆիկացնելու մասին։ Ստեղծվեց էներգետիկ հզոր բազա, որի հիման վրա բուռն թափով զարգացավ Սովետական Հայաստանի արդյունաբերությունը։



Ստեղծվեցին առաջավոր ինդուստրիայի բոլորովին նոր այնպիսի ճյուղեր, ինչպես քիմիական, ռետինի, մետաղամշակման, մեքենաշինական, տեքստիլ, սննդի, համի, լեռնա-հանքային, շինանյութերի և արդյունաբերության այլ ճյուղեր։ Արդյունաբերության արտադրանքի ծավալը 1919 թվականի համեմատությամբ աճեց 280 անգամ։ Ներկայումս Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները տալիս են ավելի քան 500 տեսակ զանազան արտադրանք։

Ստալինյան նոր հնգամյակի առաջին տարում Սովետական Հայաստանի արդյունաբերությունը հիմնականում ավարտեց արտադրության հետպատերազմյան վերակառուցումը։ Տարվա պլանները բարձր ցուցանիշներով կատարեցին էլեկտրոէներգիայի, քիմիական, գունավոր մետաղների, մսեղեն ու կաթնեղեն մթերքների, համի արդյունաբերությունը և այլ ճյուղեր։ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը 1945 թվականի համեմատությամբ 1946 թվականին աճեց 13 տոկոսով։ Անցած տարվա ընթացքում կառուցվեցին և գործարկվեցին 15 արդյունաբերական նոր ձեռնարկություններ, այդ թվում Կաբելի գործարանը, Կորդի և Մաhուդի գործարանները, լայն սպառման մետաղյա առարկաների և այլ գործարաններ։

Նոր հնգամյակի այս և հաջորդ տարիներին շահագործման կհանձնվեն այնպիսի խոշոր ձեռնարկություններ, ինչպես՝ Սևանի լճային և Գյումուշի հզոր էլեկտրակայանները, Քաջարանի պղինձ-մոլիբդենի կոմբինատը, հիդրո-տուրբինների, ալյումինի, ժամացույցի, շինարարական գործարանները և մի շարք այլ գործարաններ ու ֆաբրիկաներ։

Ով ուզում է Սովետական Հայաստանի սոցիալիստական ինդուստրիայի հետագա ծաղկումն ու

բարգավաճումը, նա ձայն կտա կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուներին։

Սովետական իշխանության տարիներին արդյունաբերության հարաճուն զարգացման հետ միասին բուռն թափով զարգացավ նաև երկրի գյուղատնտեսությունը։ Կոլխոզային կարգերի հաղթանակն արմատապես վերափոխեց հայկական գյուղը, հնարավորություն տալով մեր Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը փոխադրել սոցիալիստական ուղու վրա, որի հետևանքով բացվեցին նրա զարգացման լայն հեռանկարներ։ Հիմնական գյուղատնտեսական աշխատանքները ներկայումս կատարվում են տրակտորների և մեքենաների միջոցով։ 38 մեքենատրակտորային կայաններ սպասարկում են մեր Ռեսպուբլիկայի կոլխոզներին։

Սովետական իշխանության տարիներին մեր Ռեսպուբլիկան ծածկվեց ոռոգիչ ջրանցքների խիտ ցանցով, Հայաստանի աշխատավորները իրագործեցին Վլադիմիր Իլյիչի ցուցումը ոռոգման մասին։ Ջրովի տարածությունները Ռեսպուբլիկայում ներկայումս կազմում են ավելի քան 210 հազար հեկտար։ 25 տարվա ընթացքում Սովետական Հայաստանի իրիգացիոն շինարարության մեջ ներդրված է 237 միլիոն ռուբլի, որից պետական կապիտալ ներդրումներ՝ 155 միլիոն ռուբլի։

Այս բոլոր ձեռնարկումների շնորհիվ, Ռեսպուբլիկայում գյուղատնտեսական կուլտուրաների ցանքերի տարածությունն ավելացավ 5 անգամ, բերքատվությունը՝ կրկնապատկվեց։

Ավելի հոյակապ է ոռոգիչ շինարարության զարգացման հեռանկարը նոր հնգամյակում, երբ ավելի քան 23 ու կես հազար հեկտարով ընդլայնվելու են ջրովի հողերի տարածությունները։ Այդ հողերը կծածկվեն խաղողի ու պտղատու այգիներով, շաքարի ճակնդեղի և այլ տեխնիկական կուլտուրաների պլանտա-



ցիաներով։ Ստալինյան նոր հնգամյակի տարիներին իրենց լրիվ կարողությամբ շահագործման կհանձնվեն Ստալինի անվան, Նորքի, Ստորին Զանգվի, Գառնիի և այլ ջրանցքներ, կիրագործվի Արաղդայանի ամայի տափաստանի ոռոգումը, կկառուցվեն Արփա լճի ջրամբարը, Կոտայքի ջրհան կայանը։ Իրիգացիոն շինարարությունը կծավալվի Ռեսպուբլիկայի գրեթե բոլոր շրջաններում։

Ստալինյան նոր հնգամյակի առաջին տարին զգալի հաջողություններով փակեց մեր Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ 1946 թվականին Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայում կոլխոզները ցանքի պլանը կատարեցին 101 տոկոսով։ Չնայած անբարենպաստ եղանակներին, Ռեսպուբլիկայի կոլխոզները 1946 թվականին հացահատիկային կուլտուրաների, բամբակի, շաքարի ճակնդեղի, ծխախոտի, կարտոֆիլի և այլ կուլտուրաների ավելի բարձր բերք ստացան, քան 1945 թվականին։ Մեր Ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը պատվով կատարեց գյուղատնտեսական արտադրանքի հանձնման պետական առաջադրանքները։

Նոր հնգամյակի առաջին տարում զգալիորեն ընդարձակվեց բազմամյա տնկիների տարածությունը։ 1946 թվականին՝ 1945 թվի համեմատությամբ նոր տնկված խաղողի այգիների տարածությունը ավելացել է 13 տոկոսով, իսկ պտղատու այգիներինը՝ 55 տոկոսով։

Բուռն թափով զարգացել է Ռեսպուբլիկայի անասնաբուծությունը, աճել է անասունների գլխաքանակը, բարձրացել է նրանց մթերատվությունը։

Սոցիալիստական գյուղատնտեսության բնագավառում այս խոշոր նվաճումները ձեռք են բերվել Լենին-Ստալինի մեծ պարտիայի ղեկավարությամբ։

Կոլխոզային գյուղացիության մասին պարտիայի և կառավարության հոգատարության ցայտուն արտահայտություն հանդիսանում է «Կոլխոզներում գյուղատնտեսական արտելի Կանոնադրության խախտումները վերացնելու միջոցառումների մասին» ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1946 թվի սեպտեմբերի 19-ի պատմական որոշումը։ Այդ որոշման իրագործումը կհանգեցնի կոլխոզների կազմակերպական-տնտեսական հետագա ամրապնդմանը և կոլխոզնիկների նյութական բարեկեցության բարձրացմանը։

Ով ուզում է սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելք, ով ձգտում է, որ մեր երկրում լինի հացի և գյուղատնտեսական այլ մթերքների առատություն, ով ուզում է, որ բոլոր աշխատավորները ունենա և կուլտուրական կյանք վարեն, նա ձայն կտա կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուներին։

Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության անշեղ կենսագործման շնորհիվ, սովետական իշխանության տարիներին ծաղկեց հայ ժողովրդի կուլտուրան, արվեստը և գրականությունը։ Սովետական Հայաստանում՝ բնակչության միջից վերացվեց անգրագիտությունը։ Եթե 1913 թվականին Հայաստանում կար 446 ծխական և 7 միջնակարգ դպրոց՝ 34.738 աշակերտներով, ապա այժմ Սովետական Հայաստանում գործում է 1144 դպրոց, որից 244-ը տարրական, 612-ը յոթնամյա և 288-ը միջնակարգ դպրոց՝ 276 հազար աշակերտներով։ Սովետական Հայաստանի բյուջեի 40 տոկոսից ավելին հատկացվում է ժողովրդական կրթությանը։ Սա ակնառու փաստ է, թե կոմունիստական պարտիան և սովետական իշխանությունը ինչպիսի մեծ հոգատարություն են ցուցաբերում դեպի ժողովրդի լուսավորությունը։



Հայաստանում ներկայումս գործում են 13 բարձրագույն ուսումնական հաստատություններ, որոնք երկրին տվել են մոտ 12 հազար մասնագետ, իսկ Ռեսպուբլիկայի տեխնիկումները՝ 20 հազարից ավելի միջին որակի մասնագետ։

Հայրենական մեծ պատերազմի ծանր տարիներին, 1943 թվականին Երևանում կազմակերպվեց Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Գիտությունների Ակադեմիան։ Ռեսպուբլիկայում գործում են 45 գիտահետազոտական ինստիտուտներ և գիտական հաստատություններ։

Մեծ չափով ընդարձակվել է առողջապահական հիմնարկների ցանցը, բարելավվել է բնակչության բուժսպասարկումը։

Ստալինյան նոր հնգամյակի տարիներին է՛լ ավելի կծաղկի ու կբարգավաճի Սովետական Հայաստանի կուլտուրան, գիտությունը, արվեստը, ժողովրդական լուսավորությունը։

Ով ուզում է, որ Սովետական Հայաստանում կրթությունը և կուլտուրան, գիտությունը, արվեստը և գրականությունը է՛լ ավելի ծաղկեն ու բարգավաճեն, նա ձայն կտա կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուներին։

Սովետական մարդկանց նյութական բարեկեցությունը բարելավելու հարցը միշտ եղել է բոլշևիկյան պարտիայի և սովետական պետության ուշադրության կենտրոնում։ Խաղաղ շինարարության տարիներին մեծ չափով բարձրացավ մեր Ռեսպուբլիկայի աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակը։ Պատերազմի տարիները մեծ զրկանքներ պատճառեցին մեր ժողովրդին և պահանջվում է ոչ քիչ աշխատանք, որպեսզի վերացվեն պատերազմի հետևանքները ու բարելավվեն ժողովրդի նյութական պայմանները։ Այդ

պատճառով ստալինյան նոր հնգամյակում մեր հիմ-
նական խնդիրներից մեկն է՝ բարձրացնել աշխատա-
վորների նյութական բարեկեցությունը, բնակչությանը
տալ է՛լ ավելի շատ լայն սպառման ապրանքներ և
սննդամթերք, բարեկարգել քաղաքներն ու գյուղերը,
ուժեղ թափով առաջ մղել բնակարանների, հիվանդա-
նոցների, ծննդատների շինարարությունը, է՛լ ավելի լայ-
նացնել հանգստյան տների ու սանատորիաների, ման-
կապարտեզների, մանկամսուրների և կենցաղային այլ
հիմնարկների ցանցը, է՛լ ավելի ուժեղացնել ամենօրյա
հոգատարությունը մոր և մանկան նկատմամբ, ապահո-
վել սովետական երիտասարդության աշխատանքի, կեն-
ցաղի պայմանների հետագա բարելավումը, հա-
մաժողովրդական հոգատարությամբ շրջապատել Հայ-
րենիքի համար իրենց կյանքը զոհաբերած սովետա-
կան ռազմիկների ընտանիքներին։

Ով ուզում է, որ է՛լ ավելի բարելավվի Սովետական
Հայաստանի աշխատավորների նյութական ու կենցա-
ղային դրությունը, ով ուզում է, որ սովետական բոլոր
մարդիկ ապրեն է՛լ ավելի ապահով և կուլտուրական
կյանքով, նա ձայն կտա կոմունիստների և անպար-
տիականների ստալինյան բլոկի թեկնածուներին։

Անսասան և անխորտակելի է Սովետական Միու-
թյան ժողովուրդների ստալինյան բարեկամությունը։
Լենինյան-ստալինյան ազգային իմաստուն քաղաքա-
կանության շնորհիվ, ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրա-
կան ընտանիքում, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ,
Սովետական Հայաստանը դարձավ Սովետական Միու-
թյան իրավահավասար ու առաջավոր ռեսպուբլիկանե-
րից մեկը։ Հայրենական պատերազմի առաջին իսկ օ-
րից, Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ
միասին հայ ժողովուրդը ոտքի ելավ՝ պաշտպանելու
Սոցիալիստական Հայրենիքը։ Պատերազմի բոցերի մեջ
է՛լ ավելի կոփվեց ու ամրապնդվեց մեր երկրի բազմ-



ազգ ժողովուրդների բարեկամությունը, Սովետական
Միության ժողովուրդները է՛լ ավելի սերտորեն համա-
խմբվեցին բոլշևիկների պարտիայի, Սովետական կա-
ռավարության և մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուր-
ջը։

Ով ուզում է, որ հետագայում էլ է՛լ ավելի
ամրապնդվի Սովետական Միության ժողովուրդների
ստալինյան բարեկամությունը, նա ձայն կտա կոմու-
նիստների և անպարտիականների ստալինյան բլոկի
թեկնածուներին։

Հայ ժողովրդի նկատմամբ ստալինյան հոգատա-
րության հիանալի արտահայտություններից մեկն է սո-
վետական կառավարության պատմական որոշումը՝
արտասահմանյան հայերի հայրենիք՝ Սովետական Հա-
յաստան վերադառնալու մասին։ Այդ որոշմամբ սկիզբ
դրվեց բոլոր հայերի վերամիավորմանը սովետական
հարազատ հողում, մեկ միասնական ընտանիքում։ Ար-
դեն հայրենիք են վերադարձել մոտ 51 հազար հայեր՝
Իրանից, Սիրիայից, Լիբանանից, Հունաստանից, Բուլ-
ղարիայից և Ռումինիայից, որոնք հարազատ երկրում
օթևան ստացան և օգտվում են սովետական քաղաքա-
ցու բոլոր իրավունքներից, իրենց արյունակից եղբայր-
ների հետ բաժանում են ստեղծագործ աշխատանքի ու-
րախությունը և առաջին անգամ մասնակցում են իրենց
հայրենիքի Գերագույն օրգանի ընտրություններին։ Ար-
տասահմանյան հայերի վերադարձը հայրենիք հնարա-
վոր դարձավ շնորհիվ սովետական իշխանության, շը-
նորհիվ մեծ Ստալինի հայրական հոգատարության։

Հայրենական մեծ պատերազմի հաղթական ավար-
տումից հետո Սովետական Միությունը թևակոխել է իր
պատմական զարգացման նոր շրջանը։ Սովետական
ժողովրդի հետ միասին, Սովետական Հայաստանի աշ-
խատավորները ձեռնամուխ են եղել ստալինյան նոր
հնգամյակի, հոյակապ խնդիրների իրագործմանը։ Հետ-

պատերազմյան հնգամյակի առաջին տարվա արդյունքները ցույց են տալիս, որ մեր ռեսպուբլիկայի աշխատավորները չեն խնայել ոչ մի ջանք ու եռանդ՝ ստալինյան նոր հնգամյա պլանը կատարելու ու գերակատարելու համար։ Եվ այդ հասկանալի է։ Հայաստանի աշխատավորները խորապես գիտակցում են, որ հնգամյակի խնդիրների հաջող իրագործումը է՛լ ավելի կհզորացնի մեր Հայրենիքը, կբարելավի աշխատավորության նյութական-կենցաղային դրությունը, կամրապնդի սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում։

ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի և մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան իր պրակտիկ գործունեությամբ անշեղորեն ու հետևողականորեն իրականացնում է Լենին-Ստալինի մեծ գաղափարները։ Նա ապացուցել է, որ ընդունակ է մինչև վերջը պաշտպանելու ժողովրդի շահերը, իր բոլոր ուժերը նվիրելու ժողովրդի բարօրության և բարգավաճման գործին։

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեն համոզմունք է հայտնում, որ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի առաջիկա ընտրություններին բոլոր ընտրողները միահամուռ կերպով ձայն կտան կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուներին։

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեն կոչ է անում Սովետական Հայաստանի բանվորներին և բանվորուհիներին, գյուղացիներին և գեղջկուհիներին, սովետական ինտելիգենցիային, Սովետական Բանակի ռազմիկներին, մեր ռեսպուբլիկայի բոլոր ընտրողներին՝ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի առաջիկա ընտրություններին է՛լ



ավելի սերտորեն համախմբվել մեր հարազատ սովետական կառավարության շուրջը, բոլշևիկյան պարտիայի շուրջը, մեր մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի շուրջը և պայքարել մեր հայրենիքի հետագա ծաղկման, մեր երկրում կոմունիզմի լիակատար հաղթանակի համար։

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեն կոչ է անում բոլոր ընտրողներին՝ կոմունիստներին և անպարտիականներին՝ լիակատար միասնականությամբ ձայն տալ կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուներին։

Չպետք է լինի ոչ մի ընտրող, որը չօգտվի Ռեսպուբլիկայի իշխանության Գերագույն օրգանի դեպուտատ ընտրելու իր պատվավոր իրավունքից։

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեն կոչ է անում բոլոր ընտրողներին՝ 1947 թվականի փետրվարի 9-ին բոլորը, մեկ մարդու պես մոտենալ քվեատուփերին և ձայն տալ կոմունիստների ու անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուներին։

1947 թվականի փետրվարի 9-ը՝ Սովետական Հայաստանի աշխատավորների համաժողովրդական տոնի օրը կդառնա բոլշևիկների պարտիայի շուրջը, մեր մեծ առաջնորդ և ուսուցիչ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի շուրջը ամբողջ հայ ժողովրդի սերտ համախմբվածության վառ ցուցադրման օր։

Բոլորս դեպի ընտրությունները

Կեցցե՛ մեր մեծ Հայրենիքը—Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը։

Կեցցե՛ մեր հարազատ սովետական կառավարությունը։

Կեցցե՛ Սովետական Հայաստանը։

Կեցցե՛ Սովետական Միության ժողովուրդների ստալինյան անխախտ բարեկամությունը։

Կեցցե՛ կոմունիստների և անպարտիականների ստալինյան հզոր բլոկը՝ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի առաջիկա ընտրություններում։

Կեցցե՛ Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան— Լենինի-Ստալինի պարտիան։

Կեցցե՛ մեր բոլոր հաղթանակների կազմակերպիչ և ոգեշնչող, մեր իմաստուն առաջնորդ, հայր և ուսուցիչ, հայ ժողովրդի ազատարար մեծ Ստալինը։

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ (ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ) ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ**

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 00665 պատվեր 200, տիրաժ 9000, ստորագրված է տպագրության 5 փետրվարի 1947 թ.

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պոլիգրաֆ. և Հրատ. վարչության № 2 տպարան, Երևան.